Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 9 ՄԱՅԻՍ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։





# ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ 1905—1907 Թ.Թ. ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

### (ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Բ. ԼԱԼԱՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

*Ռուսական առաջին ռևոլյուցիան լայն արձագանք գտավ ազգային ծայրամասերում։ Ռուսական պրոլետարիատի հերոսական պայքարը ոգեշնչող օրինակ դարձավ Հայաստանի բանվորների և գյուղացիների համար։ 1905 թվականի հունվարի 9-ի Պետերբուրգի արյունոտ դեպքերի առթիվ Կովկասյան Միութենական Կոմիտեն Անդրկովկասի բանվորներին ու գյուղացիներին կոչ արեց՝ միանալ ռուսական պրոլետարիատի պայքարին, որի նպատակն էր տապալել ցարիզմի դարավոր ճնշումը։ «Ռուսաստանի պրոլետարիատի հետ միասին դեպի՛ պայքար», «Կորչի՛ ցարիզմը», «Կեցցե՛ սոցիալիզմը»— սա-*

ված է ՌՍԴ(բ)Պ Կովկասյան միության հունվարի 9-ի առթիվ բաց թողած պրոկլամացիայի մեջ։ Հայաստանի բանվորները և գյուղացիները բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ լայն կերպով արձագանքեցին Կովկասյան Միութենական Կոմիտեի կոչին։

Սկսած 1905 թվականի փետրվարից Հայաստանի մի շարք արդյունաբերական կենտրոններում բանվորները հանդես եկան քաղաքական ելույթներով ու գործադուլներով՝ ի պաշտպանություն ռուսական պրոլետարիատի։ 1905 թվականի մարտին, Բորչալուի բոլշևիկյան կազմակերպության կոչով, աշխատանքը թողեցին Սանահին—Ղարաքիլիսա երկաթուղու բանվոր-ծառայողները և ներկայացրին մի շարք պահանջներ, որոնց թվում 8-ժամյա բանվորական օր, խոսքի, մամուլի, ժողովների ազատություն։ Նույն թվականի ապրիլի 8-ին գործադուլ հայտարարեցին Ալեքսանդրապոլի երկաթուղայինները։ Այդ գործադուլի հետևանքով երթևեկությունը կանգ առավ Ալեքսանդրապոլ—Թիֆլիս, Ալեքսանդրապոլ—Երևան գծերում։ Ալեքսանդրապոլի երկաթուղայիններին հետևեցին Ալավերդու, Ղափանի հանքերի, Ղարսի, Երևանի մի շարք ձեռնարկություն-



ների և արհեստանոցների բանվորները։ Գործադուլավորները Ալավերդում, Ղարսում կազմակերպեցին քաղաքական ցույցեր՝ ընդդեմ ցարիզմի և նրա տեղական իշխանությունների։ Մի շարք հուզումներ տեղի ունեցան Ալեքսանդրապոլի, Ղարսի զորամասերում, որտեղ նույնպես գործում էին սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները։

Ռևոլյուցիոն շարժումը ծավալելու, այն ճիշտ հունի մեջ դնելու գործում կարևոր նշանակություն ունեցան մեր պարտիայի 3-րդ համագումարի որոշումները և Վ. Ի. Լենինի «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» գիրքը։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները, զինված 3-րդ համագումարի որոշումներով և Լենինի կողմից մշակված ստրատեգիայի ու տակտիկայի հզոր զենքով, գլխավորեցին և ուղղություն տվեցին բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն շարժումներին։ Պաշտպանելով բոլշևիկների տակտիկական սկզբունքները, պանծալի ռևոլյուցիոներներ Ստեփան Շահումյանը, Սուրեն Սպանդարյանը, Բոգդան Կնունյանցը և ուրիշները հայ աշխատավորներին կոչ էին ա-

նում պայքարել ցարիզմի տապալման, ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարության ստեղծման համար։ Ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարության խնդիրը պետք է լինի.

«....Ոչնչացնել ֆեոդալական մնացորդները, զինաթափել ռեակցիան, զինել ժողովրդին, ճնշել կոնտրռևոլյուցիայի բոլոր փորձերը, իրականացնել երկրում դեմոկրատական ռեսպուբլիկա, ապահովել Սահմանադիր ժողովի ազատ ու համաժողովրդական գումարումը» («Պրոլետարիատի կռիվ» № 6, 1915 թ.)։

Համառուսական քաղաքական գործադուլի ազդեցության տակ բանվորա-գյուղացիական շարժումը Հայաստանում ավելի ուժեղ և մասսայական բնույթ ստացավ 1905 թվականի աշնանը։ Հոկտեմբեր, նոյեմբեր ամիսները նշանավորվեցին նոր մասսայական գործադուլներով։ Այդ ամիսներին գործադուլ արեցին Սանահինի, Ղարսի, Ալեքսանդրապոլի, Երևանի, Ջուլֆայի երկաթուղայինները, նրանց միացան Ալավերդու, Ղափանի հանքագործները, Երևանի, Ղարսի մի շարք ձեռնարկությունները, արհեստանոցների և Բորչալուի անտառտնտեսության բանվորները։ Գործադուլները մի շարք տեղերում վերածվեցին բողոքի, ցույցերի ու միտինգների։



Ալավերդու կայարանում տեղի ունեցած հանքագործների և երկաթուղայինների միտինգում ելույթ ունեցողները կոչ էին անում շարունակել պայքարը, մինչև առաջադրված բոլոր պահանջների կատարումը։ Ալավերդու գործադուլավորները ընտրեցին գործադուլային կոմիտե, որը մշակեց բանվորների 28 կետից կազմած պահանջներ և ներկայացրեց ադմինիստրացիային։ Գործադուլային կոմիտեն կատարում էր ընտրովի ղեկավար օրգանի դեր։ Կազմակերպում էր գործադուլավորներին օգնություն ցույց տալու գործը։ Բանվորների հերոսական պայքարը ստիպեց հանքվարչությանն ընդունելու առաջադրված պահանջների մեծ մասը։ Ավելի կազմակերպված բնույթ ընդունեց Ալավերդու բանվորների 1905 թվականի նոյեմբերյան գործադուլը։ Գործադուլավորները փաստորեն իրենց ձեռքը վերցրին պղնձաձուլական գործարանը, ձուլված պղնձի ամբողջ պաշարը։ Այդ գործադուլի ընթացքում բոլշևիկ ագիտատորները բանվորների հետ կազմակերպում էին զրույցներ, միտինգներ, գործադուլավորներին պատմում էին ռուսական պրոլետարիատի հերոսական պայքարի մասին, այն մասին, թե ինչպես կարելի է հաղթանակի հասնել։ Գործադուլի ընթացքում բան-

վորները դիմացան ամենածանր պայմաննե-
րին։

Գործադուլի ընթացքում փայլուն կերպով դրսևորվեց Ալավերդու բազմազգ բանվորների ինտերնացիոնալ համերաշխությունը. «Կավկազսկի ռաբոչի լիստոկ» թերթը այդ մասին գրում է. «Այստեղ բոլոր ազգերի բանվորները համախմբված են ռևոլյուցիոն կարմիր դրոշի տակ... Միատեսակ շահերը միավորել են զանազան ազգությունների բանվորներին...» (№ 6, 1905 թ.)։ Բանվորների այդ ինտերնացիոնալ համերաշխությունը ստիպեց ֆրանսիական գաղութարարներին բանվորների հետ ստորագրել նոր պայմանագիր, ըստ որի պետք է վերացվեին տուգանքները, բանվորներին պետք է տրվեր ձրի բժշկական օգնություն, պետք է թոշակավորվեին հաշմանդամ և ծեր բանվորները, այնուհետև պետք է բանվորներին տրվեր խոսքի, ժողովների, մամուլի ազատություն։

1905 թվականի հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին տեղի ունեցած գործադուլների ընթացքում Հայաստանի բանվորական շարժման պատմության մեջ նշանավոր էջեր գրեցին Բորչալուի անտառտնտեսության բանվորները, Սանահինի, Ալեքսանդրապոլի երկաթուղայինները։ Նրանք Ռուսաստանի եր-



կաթուղայինների օրինակով, Անդրկովկասի երկաթուղայինների հետ միասին, ընդհատեցին շարժումը բոլոր հիմնական գծերում։

Երկաթուղայինների, բանվորների ու գյուղացիների զինված ջոկատները հարվածներ էին հասցնում ցարական պատժիչ ջոկատներին, կազմակերպում էին հարձակումներ զինվորական գնացքների վրա։

1905 թվականի դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո ռևոլյուցիան սկսեց տեղատվություն ապրել։ Ցարական կառավարությունը նոր ուժով սկսեց պայքարել ռևոլյուցիոն շարժման դեմ։ Ամենուրեք՝ գյուղերում, քաղաքներում, երկաթուղիներում գործում էին պատժիչ ջոկատներ։ Բայց, ինչպես մատնանշում է Լենինը, ռեակցիայի ուժեղացումը դեռևս չէր նշանակում ռևոլյուցիոն ուժերի վերջնական ջախջախում։ Դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո, դաժան հետապնդումների պայմաններում, Հայաստանի բանվորներն ու աշխատավորները շարունակում էին իրենց պայքարը ցարիզմի ճնշման դարավոր լուծը կործանելու համար։ 1906 թվականին Ալավերդու հանքագործները, ձուլարանի բանվոր-ծառայողները հայտարարեցին ընդհանուր գործադուլ։ Այդ գոր-

ծադուլի կազմակերպման և հաջող անցկացման համար հսկայական աշխատանք կատարեցին Շահումյանը և Սպանդարյանը: Գործադուլի հենց սկզբից գործադուլային կոմիտեն իր ձեռքը վերցրեց վերահսկողությունը գործարանում, գրավեց ձուլված պղնձի ամբողջ պաշարը: Բանվորները բոլշևիկների ղեկավարությամբ գործադուլի ընթացքում կազմակերպում էին ցույցեր, որտեղ գոչում էին՝ «Կորչի՛ ցարական կառավարությունը», «Կեցցե՛ քաղաքական ազատությունը»: Դաշնակներն ու մենշևիկները ամեն կերպ աշխատում էին խանգարել բանվորների պայքարը: Նրանք անկայուն բանվորներից ստեղծեցին շտրեյկբրեխերների մի խումբ և նրանց անունից դիմեցին հանքվարչությանը և կառավարական օրգաններին, որ ցանկանում են գործարանում և հանքերում աշխատանքները վերսկսել: Բոլշևիկները մերկացնելով դաշնակների, մենշևիկների դավաճանական վարքագիծը, շարունակում էին գլխավորել բանվորների համառ պայքարը: Բանվորների համառ դիմադրությունը ճնշվեց միայն զինված ուժով: Գործադուլը ճնշելուց հետո, ֆրանսիական գաղութարարները ցարական իշխանության տեղական օրգանների հետ միասին սկսեցին դատաստան տեսնել բանվորնե-



րի նկատմամբ, հսկայական թվով պարսկահպատակ բանվորների աշխատանքից ազատեցին առանց աշխատավարձի և ճանապարհածախսի, ապրանքատար վագոններով նրանց տարան ու պարսկական սահմանի վրա բաց թողեցին:

Բոլշևիկյան «Նոր խոսք» թերթը 1906 թվականին այդ մասին գրում էր. «...Գործարանի ադմինիստրացիան նրանց հետ վարվեց ամենատմարդի կերպով, տարիների ընթացքում իրենց արյան գնով և ստորերկրյա դժոխային աշխատանքով գործարանատիրոջ համար միլիոններ ստեղծող բանվորներին ճանապարհ դրեցին բառիս բուն նշանակությամբ մերկ ու քաղցած, մինչև անգամ զուրկ ճանապարհածախսից: Արտակարգ համերաշխություն էր տիրում մեր ընկեր բանվորների մեջ, նրանք ստիպված էին տանելու բոլոր արհամարհանքները, քանի որ նրանց առաջ կանգնած էին կառավարության զինված ուժերը» (№ 6): Այդ գործադուլը հսկայական նշանակություն ունեցավ բանվորների քաղաքական դաստիարակության համար: Ալավերդու բանվորները պայքարի հիանալի օրինակ տվեցին Հայաստանի բանվորների և գյուղացիների համար, ալավերդցիներին հետևեցին Բորչալուի, Երևանի, Ղարսի, Ալեք-

սանդրապոլի բանվորներն ու երկաթուղայինները։ Հայաստանի բանվորների պայքարը ընդմիջումներով շարունակվեց մինչև 1907 թվականը։ 1907 թվականի գործադուլների մեջ կարևոր նշանակություն ունեցավ Ղափանի հանքերի բանվորների մարտյան գործադուլը։ Գործադուլի կազմակերպման և անցկացման գործում հսկայական աշխատանք կատարեցին Ղափան գործուղված Բաքվի կոմիտեի անդամները և տեղական բոլշևիկյան կազմակերպությունը։ Գործադուլավորները տիրացան հանքերին, իրենց ձեռքը վերցրին պահեստները, պայթուցիկ նյութերի ամբողջ պաշարը։ Գործադուլային կոմիտեն ստեղծեց զինված ջոկատներ, որոնք հակահարվածներ էին հասցնում պրովոկատորներին։ Այդ գործադուլը ճնշվեց ցարական զինված ուժերի կողմից։ Բանվորական շարժումը ցարիզմի դեմ մղվող պայքարի մեջ ներգրավեց գյուղացիական մասսաներին։ 1905 թվականի գարնանը և ամռանը Հայաստանի մի շարք գավառներում գյուղացիները գրավում էին կալվածատերերի հողերը, բոյկոտի էին ենթարկում տեղական պաշտոնյաներին, հրաժարվում էին հարկեր վճարելուց և պարհակներ կատարելուց։

Բոլշևիկները գյուղում հսկայական աշխա-



տանք էին կատարում, մերկացնում էին դաշնակների և բուրժուա-նացիոնալիստական մյուս պարտիաների հակաժողովրդական վարքագիծը, որոնք գյուղում կատարում էին ցարական չինովնիկության դեր։ Այն ժամանակ, երբ գյուղացիները հրաժարվում էին կալվածատերերին ու կուլակներին հարկ տալուց, դաշնակների կողմից ստեղծված այսպես կոչված կոմիտեները քերթում էին խեղճ ու աղքատ գյուղացիներին, նրանց ստիպում ու սպառնում, որպեսզի նրանք վճարեն կալվածատերերի և կառավարության հարկերը։ Բոլշևիկները հայ գյուղացիներին ուղղված պրոկլամացիաներում կոչ էին անում. «Բռնագրավեցե՛ք կալվածատիրական հողերը, ստեղծեցե՛ք ձեր ռևոլյուցիոն կոմիտեները, կազմակերպվեցե՛ք սոցիալ-դեմոկրատիայի դրոշի տակ և գնացե՛ք դեպի ազատություն, դեպի դեմոկրատական ռեսպուբլիկա... Երես դարձրե՛ք ստոր բարեկամներից, դո՛ւրս եկեք ձեզ կապանքի մեջ պահող մարդկանց ճանկերից, միացե՛ք քաղաքի ձեր ընկեր բանվորներին»։

Հայաստանի գյուղացիական շարժման բոլոր պահանջները բխում էին սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագրից։ Գյուղացիները բազմաթիվ շրջաններում զինված դի-

մադրություն էին ցույց տալիս ցարական պատժիչ ջոկատներին։

*Ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Հայաստանի բանվորներն ու գյուղացիները բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ, ռուս ժողովրդի և ազգային ծայրամասերի մյուս ժողովուրդների հետ կողք-կողքի պայքարում էին՝ ցարիզմի դեմ՝ հանուն ազատության ու անկախության։*

*Աշխատավորների թափած արյունը 1905—1907 թ. թ. ռևոլյուցիայի տարիներին իզուր չանցավ։ Մեր երկրի բանվորներն ու գյուղացիները զինված 1905—1907 թ. թ. ռևոլյուցիայի հարուստ փորձով, 1917 թվականին ոչնչացրին կալվածատերերի և կապիտալիստների տիրապետությունը և ստեղծեցին աշխարհում առաջին Սովետական պետությունը։*

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ
ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի
դպրոցական բաժնի վարիչ

*Հարազատ Կոմունիստական պարտիան և նրա ստեղծող մեծ Լենինը միշտ էլ կարևոր նշանակություն են տվել երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակությանը։*

*Մեր երկրի դպրոցները, արհեստագործական ուսումնարանները և մյուս ուսումնական հաստատությունները կիրառելով պոլիտեխնիկ ուսուցումը, երեխաների մեջ պատվաստում են աշխատանքային սովորույթներ և մանավանդ սեր դեպի աշխատանքը։*

*Երիտասարդության և սովորողների աշխատանքը ուղղված է մեր սոցիալիստական Հայրենիքի օգտին։ Աշխատանքը մարդու մեջ զարգանցնում է անձնական արժանապատվության զգացում, ամրացնում է հավատն իր ուժերի ու կարողությունների նկատմամբ, նրա մեջ դաստիարակում է լավագույն հատ-*

կություններ։ Այդ պատճառով էլ մեր երիտասարդության և դպրոցականների ուսուցումը պետք է համընկնի արտադրողական ուժերի հետ։ Լենինն ուսուցանում էր, որ «Չի կարելի պատկերացնել ապագա հասարակության իդեալը, առանց ուսուցումը միացնելու երիտասարդ սերնդի արտադրողական աշխատանքի հետ. ո՛չ ուսուցումն ու կրթությունն առանց արտադրողական աշխատանքի, ո՛չ արտադրողական աշխատանքն առանց զուգահեռ ուսուցման ու կրթության չեն կարող դրվել այն բարձրության վրա, որ պահանջում են տեխնիկայի արդի մակարդակը և գիտական իմացության վիճակը»։

Միայն լենինյան այդ սկզբունքի հիման վրա կարելի է իրագործել երիտասարդության աշխատանքային դաստիարակության տալու խնդիրը։

Երիտասարդների մեջ դեպի աշխատանքը կոմունիստական վերաբերմունք դաստիարակելը պետք է սկսվի դպրոցում, ընտանիքում և բարձրագույն ուսումնական հաստատությունում։

Երիտասարդությունն իր աշխատանքային սովորությունները սկզբում ձեռք է բերում ընտանիքում։ Սովետական ընտանիքը, դա աշխատանքային կոլեկտիվ է։ Ընտանիքում



աճող սերունդը տեսնում է, թե ինչպես իր ծնողներն ու ընտանիքի մյուս անդամները ցուցաբերում են կենդանի հետաքրքրություն միմյանց աշխատանքային հաջողությունների նկատմամբ, ինչպես են օգնում մեկը մյուսին և ինչպես են հպարտանում մեր Հայրենիքի առաջավոր մարդկանց հաջողություններով։ Այստեղից՝ ծնողները պետք է երեխաների մեջ զարգացնեն աշխատանքային կայուն սովորույթներ։

Աշխատանքը՝ լինի դա ընտանիքում, դպրոցում, գործարանում, թե կոլտնտեսությունում երիտասարդության մեջ զարգացնում է բարոյական բարձր հատկություններ, քանի որ աշխատանքային դաստիարակությունը հանդիսանում է կոմունիստական բարոյականության բաղադրիչ մասը։ Խիստ բարձր է մեր ժողովրդի աշխատանքային խանդավառությունն իր հարազատ երկրի հզորությունն ամրապնդելու համար մղվող պայքարում։

Սովորող երիտասարդության աշխատանքային գործունեության հիմնական տվյալներից մեկն էլ հանդիսանում է ուսումնական աշխատանքը։ Ի. Վ. Ստալինը ասել է. «Որպեսզի կառուցել, պետք է գիտենալ, պետք է տիրապետել գիտությանը։ Իսկ որպեսզի գի-

տենալ, պետք է սովորել։ Սովորել համառորեն, համբերատար»։

Շատ դպրոցներ ու ընտանիքներ ժամանակին կարողացան լավ կազմակերպել դաստիարակության գործը, որի շնորհիվ միջնակարգ կրթություն ստացած բազմաթիվ տղաներ ու աղջիկներ մեկնեցին արտադրության տարբեր բնագավառներում աշխատելու։

Այդ մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ տարիներ առաջ 9-րդ դասարանցի Կոնստանդին Արամյանը, ցանկանալով դառնալ փականագործ, վերջացնելով Երևանի Գոգոլի անվան միջնակարգ դպրոցը, աշխատանքի անցավ Ձերժինսկու անվան գործարանի փականագործական ցեխում։ Նա իր մասին ասում է. «Ես շատ շուտ տիրապետեցի իմ մասնագիտությանը, որովհետև այդ բանում ինձ օգնության հասան ֆիզիկայից, քիմիայից, մաթեմատիկայից և պոլիտեխնիկ փորձնական աշխատանքներից դպրոցում իմ ձեռք բերած գիտելիքները»։

Երբ Աբովյանի անվան դպրոցի 10-րդ դասարանի ֆիզիկայի դասատուն աշակերտներին էքսկուրսիայի տարավ Հայէլեկտրո գործարանը, Ռաֆիկ Հովհաննիսյանը վերջնականապես որոշեց դպրոցն ավարտելուց հետո դառնալ էլեկտրոմեխանիկ։ Նրա ցան-



կությունն իրականացավ։ Այժմ նա աշխատում է այդ նույն գործարանում, իր ընտրած մասնագիտությամբ։

Շատ պատանիներ ու աղջիկներ, արձագանքելով Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հայրենասիրական կոչին, մեկնել են խամ ու խոպան հողերի յուրացման վայրերը։ Այդ և նման բազմաթիվ այլ փաստերը լավագույն վկայությունն են աշխատանքային ճիշտ դաստիարակության մասին։

Ուսանողական աշխատանքը դպրոցում, ընտանիքում, ուսուցչական կոլեկտիվում հանդիսանում է աշխատանքային դաստիարակության հիմքը։ Այդ սովորույթների շարքին կարելի է դասել աշակերտների կողմից թեորիական և գործնական բնույթի դպրոցական առաջադրանքների կատարումը, մոդելների ու պարզ մեխանիզմների պատրաստումը, տեխնիկական կատարելագործումները, դազգահագործական ու փականագործական աշխատանքներ անելը, կար ու ձևին տիրապետելը, էլեկտրասարքավորումների, ռադիո-լարերի նորոգումը և այլն։ Այսպես, օրինակ, Մաքսիմ Գորկու անվան դպրոցում № 1 տպարանի աշխատողների ղեկավարությամբ սովորողները կազմել են գրադարանի





բոլոր գրքերը։ Ցիցիկայի դասատու ընկ. Եղիազարյանի ղեկավարությամբ № 17 դպրոցի 300 աշակերտներ պատրաստել են ապագա «Ոսկեվազ» գյուղի մոդելը և արժանացել գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցներ լինելու պատվին։ Ջերժինսկու անվան դպրոցից՝ աշակերտներ Բակունցն ու Մնացականյանը պատրաստել են քայլող էքսկավատորի գործող մոդելը։ Մարտունու շրջանի Ջոլաքար գյուղի սովորողները իրենց դպրոցամերձ հողամասից (հեկտարային արտահայտությամբ) ստացել են 425 ցենտներ պոմիդոր, 400 ցենտներ ձմերուկ։ Ցանտան գյուղում, օգնելով կոլտնտեսականներին, միջնակարգ դպրոցի աշակերտները վաստակել են 7.800 աշխօր։

Վերը բերված օրինակներն ասում են, որ երիտասարդության բարոյական դաստիարակության կարևոր միջոցը հանդիսանում է աշակերտների հասարակական գործունեությունը և նրանց հասարակական հանրօգուտ սիստեմատիկ աշխատանքը։ Մենք պետք է մեր երիտասարդության մեջ զարգացնենք աշխատանքի հասարակական բարձր գիտակցականություն, որպեսզի ամեն մի քաղաքացի անձնվիրաբար ծառայի սոցիալիստական շինարարության ընդհանուր նպա-



տակին և նրա մեջ պատվաստվի հայրենիքին մաքսիմում օգուտ տալու ձգտում։ Աշխատանքային գործունեության ընթացքում պետք է աշակերտների մեջ զարգացնել ճշմարտության սովորույթներ ու կարողություններ, այդ գործում թույլ չտալով անպատասխանատվություն ու թափթփվածություն։ Մենք պետք է երիտասարդության մեջ արթնացնենք և զարգացնենք աշխատանքը լավագույն ձևով կատարելու զգացում, հարգանք ու արժանապատվություն՝ դեպի աշխատավոր մարդը։

Այդ նպատակով վերջերս հետաքրքիր հանդիպում կազմակերպեց ՀԼԿԵՄ Երևանի Կոմիտեն՝ Ստալինյան ռայոնի տասներորդ դասարանցիների և միջնակարգ կրթություն ունեցող երիտասարդ բանվորների հետ։ Բանվորները պատմում էին իրենց աշխատանքային հաջողությունների մասին, այն մասին, թե ինչպես ամենօրյա աշխատանքում նրանց օգնում են դպրոցում ստացած գիտելիքները։ Տասներորդ դասարանցիները պատմում էին ուսման մեջ ունեցած իրենց հաջողությունների և հեռանկարների մասին։ Այդ հանդիպումը տասներորդ դասարանցիների համար մեծ նշանակություն ունեցավ առաջիկայում

ճիշտ մասնագիտություն ընտրելու գործում։

Սովետական ընտանիքում կան լավագույն պայմաններ աճող սերնդի աշխատանքային դաստիրակությունը ճիշտ կազմակերպելու համար։ Երեխաները ամեն օր տեսնելով իրենց ավագների աշխատանքային օրինակները, իրենք էլ են մասնակցում այդ աշխատանքներին, որը նպաստում է նրանց բազմակողմանի զարգացմանը։ Հաճախ որոշ ընտանիքներում հանդիպում ենք պատանի անբանների, որոնց մայրերը արդարացնելով նրանց, ասում են. «կմեծանան՝ կաշխատեն»։ Այդպիսի աշակերտները անկարգապահ են, չառաջադիմող. և այդ հասկանալի է, որովհետև նրանք աշխատելուն սովոր չեն։

Աշխատանքային դաստիարակությունը դպրոցում և ընտանիքում ինքնանպատակ չէ, այլ մի լավագույն միջոց է երեխաներին սովետական հայրենասիրությամբ դաստիարակելու, նրանց մեջ կոլեկտիվիզմի, գիտակցական կարգապահության, սոցիալիստական մարդասիրության և այլ հատկություններ դաստիարակելու գործում։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ՀԵՏ

### Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Ստեփանավանի շրջանի Կուրթան գյուղի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվը աշխատավորության շրջանում լայնորեն մասսայականացնում ու պարզաբանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը։

Անասնապահների համար հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ է անցկացնում կովաբուծական ֆերմայի ագիտատոր՝ զոոտեխնիկ Ս. Ղուկասյանը։ Օրերս նա անասնապահ կոլտնտեսականների հետ զրույց ունեցավ անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին։

— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը,— ասաց ագիտատոր Ղուկասյանը, հողագործության ու անասնա-

պահության բարձրացման լայն ծրագիր մշակեց, որտեղ հացահատիկային տնտեսությունը դիտվում է որպես գյուղատնտեսության բոլոր ճյուղերի և առանձնապես անասնապահության զարգացման գլխավոր պայման։ Առանց հացահատիկային տնտեսության զարգացման,— նշում է ագիտատորը,— անհնար է անասնապահության համար ստեղծել կերի կայուն բազա, որի համար էլ ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը պահանջում է տարեցտարի ավելացնել հացահատիկի արտադրությունը։

— Պարտիան, շարունակում է ագիտատորը,— խնդիր է դրել մոտակա 5—6 տարում հացահատիկի արտադրանքը հասցնել 10 միլիարդ փթի, որից ավելի քան 4 միլիարդ փութը առանձնացվելու է որպես անասնակեր։

Ագիտատորը մանրամասն կերպով կոլտնտեսականներին պարզաբանում է հացահատիկի արտադրությունն այդպիսի մակարդակի հասցնելու հնարավորությունները։

Այնուհետև ագիտատորը կոնկրետ փաստերով պարզաբանում է ունկնդիրներին, որ հացահատիկի արտադրության բարձր մակարդակը անասնապահության զարգացման համար կստեղծի ամուր բազա, կբարձրացնի



նրա մթերատվությունն ու ապրանքայնությունը, երկիրը կստանա անհրաժեշտ քանակությամբ անասնապահական մթերքներ, ժողովրդի պահանջմունքները սննդամթերքներով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով բավարարելու համար։ Պարտիան անասնապահության ֆրոնտի աշխատողների առջև խնդիր է դրել, շարունակում է ագիտատորը,— 1960 թվականին, 1954 թվականի համեմատությամբ ճարպի, մսի (բոլոր տեսակի) և կաթի արտադրությունը ավելացնել 2, ձվինը՝ 2,2, բրդինը 1,8 անգամ։

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման համար պարտիայի որոշման հսկայական նշանակությունը պարզաբանելու հետ միասին, ագիտատորը ունկնդիրներին կոնկրետ թվերով ու փաստերով ցույց է տալիս այն լայն հնարավորությունները, որ ստեղծել է պարտիան, գյուղատնտեսության բնագավառում շեշտակի վերելք ստեղծելու համար։

— Միայն 1954 թվականին, հիշեցնում է ագիտատորը ունկնդիրներին,— սոցիալիստական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը տվել է 137 հազար ընդհանուր օգտագործման տրակտոր (վերածված 15 ուժանոցի), 46 հազար շարահերկ տրակտոր,

37 հազար հացահատիկային կոմբայն և հարյուր հազարավոր գյուղատնտեսական այլ մեքենաներ։

Ծավալելով զրույցը կոլտնտեսականների հետ, ագիտատորը սկսում է պարզաբանել այն հարցը, թե ինչ է արել և ինչ է անելու իրենց կոլտնտեսությունը ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը կենսագործելու համար։

— Մեր կոլտնտեսությունը,— ասում է նա,— այս տարի ցանելու է 45 հեկտար եգիպտացորեն։ Դուք այդ կուլտուրայի առավելությունների և նրա բարձր բերքատվության մասին հիանալի կերպով գիտեք մեր կոլտնտեսության պրակտիկայից։ Բավական է միայն նշել, որ 1949 թվականին ցանված 10 հեկտար եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից մենք ստացանք 35 ցենտներ հատիկ, իսկ առանձին բրիգադաներում և օղակներում՝ 48 ցենտներ։ Եթե մենք այս տարի եգիպտացորենի ամեն մի հեկտարից ստանանք 35 ցենտներ հատիկ, ապա այդ նպատակի համար ցանված 20 հեկտարից կստացվի 700 ցենտներ, իսկ 25 հեկտար տարածությունից, հեկտարից միջինը՝ 300 ցենտներ կանաչ մասսա ստանալու դեպքում,



մենք կունենանք 7.500 ցենտներ կանաչ մասսա սիլոսի համար։

Խոսելով անասնակերի ավելացման լայն հնարավորությունների մասին, ագիտատորը նշում է, որ կերի ճակնդեղը և երեքնուկի խոտը իրենց կոլտնտեսությունում բարձր բերքատու կուլտուրաներ են։ Անցյալ տարի մենք ցանել ենք 10 հեկտար կերի ճակնդեղ և յուրաքանչյուր հեկտարից ստացել ենք 256 ցենտներ միջին բերք, իսկ առանձին բրիգադաներում նրա միջին բերքատվությունը կազմել է 506 ցենտներ, իսկ 120 հեկտար տարածության վրա երեքնուկի 2 անգամ հունձ կատարելու շնորհիվ հեկտարից ստացանք 38 ցենտներ լավորակ խոտ։

Կոլտնտեսության վարչությունը,— շարունակում է ագիտատորը,— որոշել է այս տարի կերի ճակնդեղի ցանքատարածությունը ավելացնել 5 հեկտարով, իսկ երեքնուկի խոտի բերքատվությունը բարձրացնելու նպատակով կատարել 3 հունձ, այդ դեպքում հեկտարի միջին բերքատվությունը կկազմի մոտավորապես 42—43 ցենտներ։

Զրույցի վերջում ագիտատորը պատմում է այն մասին, թե կոլտնտեսականներից ով իր լավ աշխատանքով, ինչպես է մասնակցում

պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշման կենսագործմանը: Նա լայն հնարավորություն է ստեղծում քըննարկվող հարցին ունկնդիրների ակտիվ մասնակցությունն ապահովելու համար: Օրինակ, ունկնդիր Ե. Մանուկյանը նշեց, որ մեր ֆերման որոշակի հաջողություններ է ձեռք բերել: Բավական է նշել, որ անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, այս տարի ֆերմայի յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացել է 89 լիտրով: Ունկնդիրներից ոմանք էլ, ինչպես, օրինակ, Ս. Ղամբարյանը, Ս. Գալստյանը նշում են մի շարք թերություններ և միաժամանակ ցույց տալիս կոնկրետ միջոցառումներ այն վերացնելու համար:

Եթե մենք մեր տվյալները համեմատենք ոչ թե անցյալ տարվա տվյալների հետ, այլ մեր հարևան կոլտնտեսությունների հետ, ապա կտեսնենք, որ մենք բոլորը չենք արել կաթնատվությունը բարձրացնելու համար: Մեր ֆերման սոցմրցության պայմանագիր ունի Վարդաբլուրի կոլտնտեսության ֆերմայի հետ: Մրցության ընթացքը ցույց է տալիս, որ վարդաբլուրցիները յուրաքանչյուր ֆուրաժային կովից 53 լիտրով ավելի շատ կաթ են ստացել, քան մենք: Մեր խնդիրը պետք է լինի՝ յուրացնել նրանց աշխատանքի փորձը և հասնել առաջավորներին:

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՇԵՇՏԱԿԻ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

(Թվեր և փաստեր)

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը նշեց գյուղատնտեսության և հատկապես նրա կարևոր ճյուղը հանդիսացող անասնաբուծության զարգացման առաջիկա հինգ—վեց տարիների կոնկրետ ծրագիրը:

✪ Հինգ—վեց տարիների ընթացքում հացահատիկի արտադրանքը երկրում պետք է հասնի ոչ պակաս 10 միլիարդ փթի, որը հնարավորություն կտա լրիվ բավարարել բնակչության պահանջները, ստեղծել անհրաժեշտ ռեզերվ, ծավալել առևտուր արտասահմանյան երկրների հետ և 4 միլիարդ փութ առանձնացնել անասնաբուծության կարիքների համար:

✪ Հացահատիկի արտադրանքն ավելացնելու համար պահանջվում է բարձրացնել հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը, անկորուստ հավաքել բերքը և յուրացնել ու հացահատիկային կուլտուրաների ցանքի տակ դնել մեծ քանակությամբ խամ և խոպան հողեր: 1956 թվականին նոր յուրացված խամ և խոպան

հողերի տարածությունը հասնելու է 28—30 միլիոն հեկտարի։

✪ Հացահատիկի արտադրանքն ավելացնելու կարևոր պայման է հանդիսանում եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակումը։ 1960 թվականին մեր երկրում ցանվելու է ոչ պակաս, քան 28 միլիոն հեկտար եգիպտացորեն։

✪ ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը անասնաբուծության շեշտակի վերելքը համարում է կենսական նշանակություն ունեցող կարևոր խնդիր մեր երկրի համար։ 1954 թվականի համեմատությամբ, 1960 թվականին մսի արտադրանքն ավելանալու է 2 անգամ, իսկ ձվինը՝ 2,2 անգամ, խոզի մսի տեսակարար կշիռը կկազմի մսի ընդհանուր արտադրանքի 41—50 տոկոսը։

✪ Կաթի արտադրանքը նախատեսված է ավելացնել 2 անգամ։ 1960 թվականին յուրաքանչյուր կովից պետք է ստանալ կոլտնտեսություններում 1.700 լիտր, իսկ սովխոզներում՝ 3.100 լիտր կաթ։

✪ Ոչխարաբուծական ֆրոնտի աշխատողների առջև խնդիր է դրված բրդի արտադրանքը 1960 թվականին ավելացնել 1,8 անգամ։ Նախատեսվում է ավելացնել նուրբ և կիսանուրբ բրդի արտադրանքը։ Յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը պետք է հասնի կոլտնտեսություններում 3 կիլոգրամի, իսկ սովխոզներում՝ 4,2 կիլոգրամի։

✪ 1960 թվականին կոլտնտեսություններում և սովխոզներում թռչունների գլխաքանակը ավելանալու է՝



2,5—3 անգամ։ Ինկուբատորային կայանները երկրին տարեկան պետք է տան 500 միլիոն ճուտ, հավերի տարեկան ձվատվությունը հասնելու է 110 հատի։

✪ Անասնաբուծության արագ զարգացման վճռական պայման է կերի կայուն բազայի ստեղծումը։ Դրա համար էլ նախատեսվում է 1960 թվականին արտադրել 65 միլիոն տոննա խտացրած կեր, 176 միլիոն տոննա սիլոս, 38 միլիոն տոննա արմատապտուղներ, 25 միլիոն տոննա կարտոֆիլ, 178 միլիոն տոննա կոշտ կեր և այլն։

✪ ՍՍՌՄ Սննդի արդյունաբերությունը տարեկան տալիս է 25 միլիոն տոննա արժեքավոր կերի մնացուկներ, որի ճիշտ և նպատակային օգտագործումը երկրին տարեկան լրացուցիչ կտա 300 հազար տոննա միս։

✪ Վերջին վեց տարիների ընթացքում կոլտնտեսություններում կառուցվել են 10 միլիոն տոննա տարողությամբ սիլոսի աշտարակներ։ Առաջիկա վեց տարիների ընթացքում պետք է կառուցվեն 45 միլիոն տոննա տարողությամբ սիլոսի աշտարակներ։

✪ Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ լուրջ խնդիր է դրված սովխոզների առջև։ 1954 թվականի համեմատությամբ, 1960 թվականին, սովխոզները պետք է ավելացնեն մսի արտադրանքը 1,8 անգամ, կաթինը՝ 2,8 անգամ, բրդինը՝ 2,2 անգամ, ձվինը՝ 4 անգամ։

✪ Անասնաբուծության գլխաքանակի աճի և մթերատվության ավելացման հիման վրա երկրում 1960

թվականին ավելանալու են անասնաբուծական մթերքների մթերումներն ու գնումները։ 1954 թվականի համեմատությամբ մթերվելու և գնվելու է միս 1,6 անգամ ավելի, այդ թվում խոզի միս՝ 2,8 անգամ, կաթ և կաթնամթերքներ՝ 1,8 անգամ, ձու՝ 3 անգամ, բուրդ՝ 2 անգամ և այլն։

✪ Առաջիկա 5—6 տարիների ընթացքում հանրային անասնաբուծության շեշտակի վերելք է տեղի ունենալու նաև մեր ռեսպուբլիկայում։ 1960 թվականին հացահատիկի արտադրությունը հասնելու է 25 միլիոն փթի, որից 11,5 միլիոն փութը առանձնացվելու է որպես անասնակեր։ Այս տարի ռեսպուբլիկայում ցանվելու է 14 հազար հեկտար եգիպտացորեն, իսկ 1960 թվականին եգիպտացորենի ցանքատարածությունները հասնելու են 45—50 հազար հեկտարի։

✪ 1960 թվականին մեր ռեսպուբլիկայում յուրաքանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց արտադրվելու է 39 ցենտներ միս, 264 ցենտներ կաթ, 320 կիլոգրամ բուրդ և ամեն մի հարյուր հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանքի դիմաց պետք է ստանալ մոտ 63 հազար ձու։ Այսպիսով, 1960 թվականին, 1954 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունը ավելանալու է 2,2 անգամ, կաթինը՝ մոտ 2 անգամ, բրդինը՝ 1,8 անգամ, ձվինը՝ 2,5 անգամ։ 1960 թվականին մեր կոլտնտեսությունները յուրաքանչյուր ոչխարից պետք է ստանան ոչ պակաս 3,3 կիլոգրամ բուրդ։



✪ 1954 թվականի համեմատությամբ՝ 1960 թվականին ռեսպուբլիկայում կոշտ կերի կուտակումը ավելանալու է 60 տոկոսով, չոր խոտի կուտակումը՝ 2 անգամ, հյութալի կերինը՝ ավելի քան 3 անգամ և խտացրած կերինը՝ 4 անգամ։

✪ Առաջիկա երեք տարում կոլտնտեսություններում բնական խոտհարքների տարածությունը հասնելու է 200 հազար հեկտարի և յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը պետք է լինի ոչ պակաս, քան 18—22 ցենտներ, կորնգանի հեկտարի բերքատվությունը պետք է լինի ոչ պակաս, քան 45 ցենտներ և առվույտի հեկտարի բերքատվությունը՝ 120 ցենտներ։

✪ ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումներից հետո անասնաբուծության ֆրոնտում մշտական աշխատանքի են գնացել 1.800 կոմունիստներ, մոտ 3 հազար կոմերիտականներ ու երիտասարդներ։

✪ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու համար խոշոր գումարներ են ներդրվում։ Միայն 1955 թվականին Պետական բյուջեով գյուղատնտեսության ֆինանսավորման համար նախատեսված է 120 միլիոն 868 հազար ռուբլի։

✪ Ռեսպուբլիկայի սովխոզները պետք է խիստ կերպով ավելացնեն կովերի գլխաքանակը և բարձրացնեն նրանց կաթնատվությունը։ Անասնաբուծական սովխոզների տրեստի սովխոզներում կաթի արտադրությունը պետք է ավելանա 2,8 անգամ, իսկ Պարենային ապրանքների արդյունաբերության մինիստրության սով-

խոզներում՝ 7,5 անգամ։ Առաջիկա երկու—երեք տարում սովխոզները պետք է ամբողջ անասնագլխաքանակը ապահովեն տիպային շենքերով։

✪ Անասնաբուծության զարգացման բնագավառում որոշակի արդյունքների են հասել ռեսպուբլիկայի մի շարք առաջավոր շրջաններ և կոլտնտեսություններ։ Ղուկասյանի շրջանի կոլտնտեսությունները 1954 թվականին կովերի կաթնատվության պլանը կատարել են 104,4 տոկոսով։ Յուրաքանչյուր կովից ստացել են 1.305 կիլոգրամ կաթ, պլանով նախատեսված 1.035 կիլոգրամի փոխարեն։

✪ Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցրել են 2.351 կիլոգրամի։ Ստեփանավանի շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր կովից ստացել են նախատեսված պլանից 174 կիլոգրամ ավելի կաթ։ Կովերի կաթնատվությունը զգալիորեն ավելացրել են Ախտայի, Նոր Բայազետի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսությունները։

---

ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

---

# ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԱԳՐԵՍԻՎ ՊԼԱՆՆԵՐԸ ՄԵՐՁԱՎՈՐ ԵՎ ՄԻՋԻՆ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

Շամշադինի շրջանի Ծաղկավան գյուղի ագիտատորներ Ս. Ծատուրյանը և Ջ. Ջուռնաշյանը դիմել են խմբագրությանը հետևյալ հարցով. «Ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլանները Մերձավոր և Միջին Արեվելքում»։ *Պատասխանում ենք այդ հարցին։*

*Մերձավոր և Միջին Արևելքի երկրները, որտեղ կա 100 միլիոն բնակչություն, ունեն ստրատեգիական հումքի առատ պաշարներ և այնտեղ կենտրոնացված է աշխարհի բոլոր կապիտալիստական երկրների նավթի պաշարի մոտ 60 տոկոսը։ Այդ է պատճառը, որ Մերձավոր և Միջին Արևելքի երկրները վաղուց ի վեր գրավում են օտարերկրյա գաղութարարների, հատկապես ամերիկա-անգլիական գիշատիչ իմպերիալիստների ուշադրությունը։*

*Արտահայտելով Ամերիկայի մոնոպոլիս-*

*խոզներում՝ 7,5 անգամ։ Առաջիկա երկու—երեք տարում սովխոզները պետք է ամբողջ անասնագլխաքանակը ապահովեն տիպային շենքերով։*

✪ *Անասնաբուծության զարգացման բնագավառում որոշակի արդյունքների են հասել ռեսպուբլիկայի մի շարք առաջավոր շրջաններ և կոլտնտեսություններ։ Ղուկասյանի շրջանի կոլտնտեսությունները 1954 թվականին կովերի կաթնատվության պլանը կատարել են 104,4 տոկոսով։ Յուրաքանչյուր կովից ստացել են 1.305 կիլոգրամ կաթ, պլանով նախատեսված 1.035 կիլոգրամի փոխարեն։*

✪ *Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցրել են 2.351 կիլոգրամի։ Ստեփանավանի շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր կովից ստացել են նախատեսված պլանից 174 կիլոգրամ ավելի կաթ։ Կովերի կաթնատվությունը զգալիորեն ավելացրել են Ախտայի, Նոր Բայազետի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսությունները։*

---

ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

---

# ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԱԳՐԵՍԻՎ ՊԼԱՆՆԵՐԸ ՄԵՐՁԱՎՈՐ ԵՎ ՄԻՋԻՆ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

Շամշադինի շրջանի Ծաղկավան գյուղի ագիտատորներ Ս. Ծատուրյանը և Ջ. Ջուռնաչյանը դիմել են խմբագրությանը հետևյալ հարցով. «Ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլանները Մերձավոր և Միջին Արևելքում»։ *Պատասխանում ենք այդ հարցին։*

*Մերձավոր և Միջին Արևելքի երկրները, որտեղ կա 100 միլիոն բնակչություն, ունեն ստրատեգիական հումքի առատ պաշարներ և այնտեղ կենտրոնացված է աշխարհի բոլոր կապիտալիստական երկրների նավթի պաշարի մոտ 60 տոկոսը։ Այդ է պատճառը, որ Մերձավոր և Միջին Արևելքի երկրները վաղուց ի վեր գրավում են օտարերկրյա գաղութարարների, հատկապես ամերիկա-անգլիական գիշատիչ իմպերիալիստների ուշադրությունը։*

*Արտահայտելով Ամերիկայի մոնոպոլիս-*

տական ագրեսիվ շրջանների շահերը, ԱՄՆ-ի պետական քարտուղար Դալլեսը անցյալ տարի Մերձավոր Արևելքի երկրները շրջագայելուց վերադառնալով հայտարարեց, որ «Այժմ ժամանակն է, որպեսզի Միացյալ Նահանգների կառավարությունը մեծ ուշադրություն դարձնի Մերձավոր Արևելքի վրա... Մերձավոր Արևելքն ունի հսկայական ստրատեգիական նշանակություն՝ ինչպես կամուրջ Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի միջև... Այդ շրջանն ունի նավթի, մարգանեցի, խրոմի, փայլարի (սլյուդա) հսկայական պաշարներ»։

Դալլեսը Բաղդադում տված պրեսկոնֆերանսում առանց քողարկելու հայտարարեց, որ ԱՄՆ-ը այժմ պետք է մեծ ուշադրություն դարձնի «Թյուրքիայից դեպի հարավ և արևելք ընկած շրջանների վրա», այսինքն՝ Պակիստանի, Իրանի, Իրաքի և ամբողջ Արաբական Արևելքի վրա։ ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանները Մերձավոր և Միջին Արևելքի երկրներին առանձնապես կարևոր նշանակություն են տալիս նաև այն պատճառով, որ նրանք մոտ են գտնվում Սովետական Միության և ժողովրդա-դեմոկրատական երկրների սահմաններին։

Մերձավոր և Միջին Արևելքում իրենց ագրեսիվ քաղաքականությունը քողարկելու հա-



մար ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանները դիմում են Սովետական Միության հասցեին ամեն տեսակ հերյուրանքների։ Այսպես, օրինակ, թյուրք-պակիստանյան պակտի կնքման և Պակիստանին ռազմական «օգնություն» ցույց տալու համար ամերիկյան պրոպագանդիստական մեքենան նորից դիմեց վաղուց մերկացված Միջին և Մերձավոր Արևելքի երկրներին Սովետական Միության կողմից «սպառնացող» մտացածին վտանգի պրոպագանդային։ Ամերիկյան ագրեսորները ամենուրեք աղաղակում են, որ այդ շրջանները հանդիսանում են հյուսիս-ատլանտյան դաշինքի «վատ պաշտպանված աջ թևը»։

ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերը 1954 թվականի փետրվարի 25-ի իր ելույթում ցինիկորեն հայտարարեց, որ «ԱՄՆ-ի կառավարությունը լուրջ կերպով անհանգստացած է Միջին Արևելքի թույլ պաշտպանական հնարավորությունների համար» և, որ նրա կարծիքով թյուրք-պակիստանյան ռազմական պակտը հանդիսանում է «Միջին Արևելքի ամբողջ շրջանի անվտանգության ապահովման լավագույն քայլը»։

Ինչպես տեսնում ենք ԱՄՆ-ի ռեակցիոն շրջաններն ու նրանց կամակատարները ձգտում են Մերձավոր և Միջին Արևելքի երկր-

ներից ստեղծել ռազմական բլոկներ ընդդեմ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների։ Դեռևս 1951 թվականի հոկտեմբերին ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Թյուրքիայի կառավարությունները դիմեցին Եգիպտոսի, Սիրիայի, Լիբանանի, Իրաքի, Սաուդյան Արաբիայի, Եմենի, Իսրայելի և Անդրհորդանանի կառավարություններին այսպես կոչված «Միջին Արևելյան հրամանատարություն» ստեղծելու, իբր թե Սովետական Միության հարձակումից Միջին և Մերձավոր Արևելքը համատեղ «պաշտպանելու» համար։

Մերձավոր և Միջին Արևելքի ժողովրդական լայն մասսաները հասկացան այդ ագրեսիվ պլանների էությունը։

Միջին և Մերձավոր Արևելքի երկրների կառավարություններին ուղարկած նոտաներով Սովետական կառավարությունը մերկացրեց ԱՄՆ-ի և նրա կամակատարների ստոր նպատակները և զգուշացրեց, որ այդպիսի ագրեսիվ բլոկի ստեղծումը լուրջ կերպով կվնասի Սովետական Միության և այդ երկրների միջև գոյություն ունեցող հարաբերությունները, ինչպես նաև կվնասի այդ շրջանում խաղաղության ու անվտանգության պահպանման կարևոր գործին։



Սովետական Միության այս նախազգուշացումը ջերմ արձագանք գտավ Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների լայն շրջաններում։ Եգիպտական ժողովուրդը ուժեղացրեց իր պայքարը անգլիական զինված ուժերը Սուեզի ջրանցքի շրջանից հանելու համար։ Ժողովրդական այդ հզոր պայքարի ազդեցության տակ եգիպտական կառավարությունն ստիպված եղավ չեղյալ հայտարարել 1936 թվականի կնքված անգլո-եգիպտական պայմանագիրը և մերժել «Միջին արևելյան հրամանատարությանը» մասնակցելու ամերիկյան առաջարկը։

Եգիպտոսից անմիջապես հետո, մասսաների ուժեղ ճնշման տակ, այդ ագրեսիվ բլոկին մասնակցելուց հրաժարվեցին Սիրիան, Լիբանանը, Իրաքը և Արաբական մյուս բոլոր պետությունները։

«Միջին արևելյան հրամանատարության» ագրեսիվ պլանի ձախողումից հետո ամերիկյան իմպերիալիզմը չհրաժարվեց իր ստոր մտադրություններից։ Սակայն այս անգամ նրանք դիմեցին նոր տակտիկայի՝ այդ երկրների հետ երկկողմանի պայմանագրեր ստորագրելու և նրանց աստիճանաբար այդ ռազմական բլոկի մեջ ներգրավելու տակտիկային։

ներից ստեղծել ռազմական բլոկներ ընդդեմ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների։ Դեռևս 1951 թվականի հոկտեմբերին ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Թյուրքիայի կառավարությունները դիմեցին Եգիպտոսի, Սիրիայի, Լիբանանի, Իրաքի, Սաուդյան Արաբիայի, Եմենի, Իսրայելի և Անդրհորդանանի կառավարություններին այսպես կոչված «Միջին Արևելյան հրամանատարություն» ստեղծելու, իբր թե Սովետական Միության հարձակումից Միջին և Մերձավոր Արևելքը համատեղ «պաշտպանելու» համար։

Մերձավոր և Միջին Արևելքի ժողովրդական լայն մասսաները հասկացան այդ ագրեսիվ պլանների էությունը։

Միջին և Մերձավոր Արևելքի երկրների կառավարություններին ուղարկած նոտաներով Սովետական կառավարությունը մերկացրեց ԱՄՆ-ի և նրա կամակատարների ստոր նպատակները և զգուշացրեց, որ այդպիսի ագրեսիվ բլոկի ստեղծումը լուրջ կերպով կվնասի Սովետական Միության և այդ երկրների միջև գոյություն ունեցող հարաբերությունները, ինչպես նաև կվնասի այդ շրջանում խաղաղության ու անվտանգության պահպանման կարևոր գործին։



Սովետական Միության այս նախազգուշացումը ջերմ արձագանք գտավ Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների լայն շրջաններում։ Եգիպտական ժողովուրդը ուժեղացրեց իր պայքարը անգլիական զինված ուժերը Սուեզի ջրանցքի շրջանից հանելու համար։ Ժողովրդական այդ հզոր պայքարի ազդեցության տակ եգիպտական կառավարությունն ստիպված եղավ չեղյալ հայտարարել 1936 թվականի կնքված անգլո-եգիպտական պայմանագիրը և մերժել «Միջին արևելյան հրամանատարությանը» մասնակցելու ամերիկյան առաջարկը։

Եգիպտոսից անմիջապես հետո, մասսաների ուժեղ ճնշման տակ, այդ ագրեսիվ բլոկին մասնակցելուց հրաժարվեցին Սիրիան, Լիբանանը, Իրաքը և Արաբական մյուս բոլոր պետությունները։

«Միջին արևելյան հրամանատարության» ագրեսիվ պլանի ձախողումից հետո ամերիկյան իմպերիալիզմը չհրաժարվեց իր ստոր մտադրություններից։ Սակայն այս անգամ նրանք դիմեցին նոր տակտիկայի՝ այդ երկրների հետ երկկողմանի պայմանագրեր ստորագրելու և նրանց աստիճանաբար այդ ռազմական բլոկի մեջ ներգրավելու տակտիկային։

Ամերիկյան իմպերիալիստների ջանքերով անցյալ տարվա ապրիլի 2-ին կնքված թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքը հանդիսանում է այն հիմքը, որի վրա պետք է ստեղծվի Մերձավոր և Միջին Արևելքի երկրներից կազմվող ագրեսիվ բլոկը։

Մերձավոր և Միջին Արևելքի մնացած մյուս երկրներին թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքին միացնելու համար ամերիկա-անգլիական իմպերիալիզմը չի խորշում ոչ մի ստոր միջոցից։ Տնտեսական, քաղաքական և ռազմական ուղղակի ճնշումներից բացի, ԱՄՆ-ի կառավարությունը օգտագործում է դիվանագետների, տարբեր «խորհրդականների», «կոնսուլտանտների», «դիտորդների» հսկայական բանակ։ Իմպերիալիստները բացի վերոհիշյալ միջոցներից, լայն կերպով օգտագործում են առանձին երկրների կառավարող շրջանները կաշառելու, փոխառությունների փշրանքներ տալու, «էժան» զենք մատակարարելու և այլ խոստումների քաղաքականություն։

1954 թվականի դեկտեմբերին Դամասկոսում (Սիրիայում) հրավիրվեց Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում լիազորագրված ամերիկյան դիվանագետների խորհրդակցություն։ Այդ նույն ժամանակ Բեյրութում (Լի-



բանան) կայացավ անգլիական դիվանագետների խորհրդակցություն։ Ամերիկա-անգլիական մոնոպոլիստների սպասարկուների այդ երկու տարբեր խորհրդակցություններում որոշվեց գործադրել իրենցից կախված բոլոր ստոր միջոցները Մերձավոր և Միջին Արևելքի երկրներից ագրեսիվ ռազմական բլոկ ստեղծելու համար։

Մերձավոր և Միջին Արևելքի երկրների անկախությանն ու սուվերենությանն սպառնացող ամերիկա-անգլիական դիվանագետների այդ դավադրությունը հայտնի դարձավ նրանով, որ Իրաքը դուրս եկավ արաբական երկրների լիգայից (որը ստեղծվել էր 1947 թվականին) և ռազմական պայմանագիր կնքեց ամերիկյան մարտակառքին լծված թյուրքական ծախու կառավարության հետ։ Դրանով Իրաքը կապվեց ինչպես թյուրք-պակիստանյան, այնպես էլ հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի հետ։ Այդպիսի կապը անկասկած Իրաքին դնում է ստրկական կախվածության մեջ ԱՄՆ-ի և Անգլիայի ռազմական շրջաններից։

Իմպերիալիստները հատուկ ուշադրություն են դարձնում Իրանի վրա։ Ամերիկյան մամուլը առանց քողարկելու նշում է, որ ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը և ռազմական

շրջանները խիստ հետաքրքրություն են ցուցաբերում Իրանի նկատմամբ հենց այն պատճառով, որ նա այնքան մոտ է Անդրկովկասյան և միջինասիական սովետական ռեսպուբլիկաներին։ Իրանը ագրեսիվ ռազմական բլոկի մեջ ներգրավելու նպատակով այդ երկիրը հաճախակի այցելումներ են կատարում ամերիկյան ռազմական և դիվանագիտական բարձրագույն պաշտոնյաները։

Իրանական և ամերիկյան մամուլում բազմիցս նշվել է, որ իրանական շահը Վաշինգտոն, Լոնդոն, Բոնն և Թյուրքիա կատարած ճանապարհորդությունից վերադառնալուց հետո, Իրանը պետք է միանա թյուրք-պակիստանյան ռազմական դաշինքին։

Արաբական երկրները չեն ուզում միանալ ամերիկյան իմպերիալիզմի ջանքերով ստեղծվող ագրեսիվ բլոկին։

Այս տարվա հունվարին Կահիրեում (Եգիպտոս) կայացած արաբական երկրների պրեմյեր մինիստրների խորհրդակցությունում քննարկվեց թյուրք-պակիստանյան ռազմական պայմանագրի հետևանքով Մերձավոր և Միջին Արևելքում ստեղծված իրադրությունը և Թյուրքիայի առաջարկը արաբական երկրներին այդ ագրեսիվ պակտին միանալու մասին։ Հայտնի է, որ արաբական



երկրների պրեմյեր մինիստրները մերժեցին Թյուրքիայի այդ առաջարկը և դատապարտեցին Իրաքի կառավարության ուխտադրուժ վարքագիծը։

Ի հակակշիռ թյուրք-իրաքյան ռազմական պակտի, Եգիպտոսը, Սիրիան, Սաուդյան Արաբիան պայմանավորվեցին կնքել տնտեսական, քաղաքական և ռազմական համագործակցության պայմանագիր, իրենց երկրների ինքնուրույնությունն ու սուվերենությունը ամերիկա-անգլիական իմպերիալիզմի ոտնձգություններից ապահովելու և ԱՄՆ-ի կողմից Մերձավոր և Միջին Արևելքում ստեղծվող ռազմական բլոկին չմիանալու համար։

Արաբական երկրների նմանօրինակ քաղաքականությունը դուր չի գալիս Ուոլլ-ստրիտի մագնատներին։ Արաբական այդ երկրներին մասնատելու և նրանց թյուրք-իրաքյան ագրեսիվ պակտին միացնելու համար ամերիկյան ռեակցիոն շրջանների համար կարևոր գործիք է հանդիսանում թյուրքական կամակատար կառավարությունը։ Կատարելով անդրօվկիանոսյան տերերի կամքը, թյուրքական ծախու կառավարությունը ռազմական մեծ ուժեր է կենտրոնացրել Սիրիայի սահմանի մոտ, սպառնալով վերջինիս միանալու

Թյուրք-իրաքյան ռազմական դաշինքին։ Սիրիական ժողովուրդը դատապարտում է Թյուրքիայի այդ բացահայտ պրովոկացիան։

Մարտի 24-ին Եգիպտոսի ազգային ղեկավարության մինիստր Սալահ Սալեմը հայտարարեց, որ Եգիպտոսը «Սիրիայի դեմ ձեռնարկված ամեն տեսակի ագրեսիա կդիտի որպես ագրեսիա Եգիպտոսի դեմ»։ Ամերիկա-անգլիական իմպերիալիզմի ագրեսիվ պլանների ձախողման համար պայքարի ելած Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների մեջ մեծ ոգևորություն առաջ բերեց Բանդունգում (Ինդոնեզիա) ապրիլի 18—24-ը հրավիրված Ասիայի և Աֆրիկայի 29 երկրների կոնֆերանսը։ Այդ կոնֆերանսի միջազգային նշանակությունը կայանում է նրանում, որ երկու մայր ցամաքների գաղութային ժողովուրդները, քաղաքական բարձր ինքնագիտակցության գալով, կարողացան դատապարտել աբևմտաեվրոպական իմպերիալիստների կողմից տարվող գաղութականության հանցավոր քաղաքականությունը, պայմանավորվեցին իրենց ջանքերը չխնայել խաղաղությունը միասնական ուժերով պաշտպանելու և քաղաքական, տնտեսական ու կուլտուրական համագործակցությունը ամրապնդելու համար։



Ելնելով միջազգային խաղաղության ու անվտանգության շահերից, Սովետական Միությունը չի կարող անտարբեր վերաբերվել Մերձավոր և Միջին Արևելքի շրջանում ամերիկա-անգլիական իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականության հետևանքով ստեղծված դրությանը։ Ահա թե ինչու ՍՍՌՄ Արտաքին Գործերի մինիստրությունը սույն թվի ապրիլի 16-ին մի անգամ ևս զգուշացրեց Մերձավոր և Միջին Արևելքի երկրներին նրանց անկախությանն ու սուվերենությանը սպառնացող վտանգի մասին։ Այդ դեկլարացիայում Սովետական կառավարությունը նշում է, որ եթե Մերձավոր և Միջին Արևելքի երկրների նկատմամբ շարունակվի ճնշման ու սպառնալիքների քաղաքականությունը, ապա այդ հարցը պետք է քննարկվի Միավորված Ազգերի կազմակերպությունում։ Սովետական կառավարությունը պատրաստ է պաշտպանելու Մերձավոր և Միջին Արևելքի պետությունների ազատությունը և անկախությունը։ Սովետական Միության դիրքը Մերձավոր և Միջին Արևելքի երկրների նկատմամբ լիովին համապատասխանում է այդ շրջանի ժողովուրդների ազգային շահերին և ջերմ պաշտպանություն է գտնում նրանց կողմից։

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ

———

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԲԱՐՁՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՄԻՋՈՑ Է ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— *Սովետական իշխանության հերթական խնդիրները, Երկեր, հատոր 27, էջ 279—338, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— *Մեծ նախաձեռնություն (բանվորների հերոսության մասին թիկունքում։ «Կոմունիստական շաբաթօրյակների» առթիվ), Երկեր, հատոր 29, էջ 501—533, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. Ստալին.— *Մեծ բեկման տարին, Երկեր, հատոր 12, էջ 134—136, Հայպետհրատ, 1949։*

*ՍՄԿԿ Կենտկոմի կոչերը 1955 թվականի Մայիսի մեկի առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 21-ի համարում։*



## ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆՎԱՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՈՐՈՇՈՒՄԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված առանձին բրոշյուրով, Հայպետհրատ, 1955։*

Ն. Ս. Խրուշչև.— *Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, տպագրված առանձին բրոշյուրով, Հայպետհրատ, 1955։*

*ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1955 թվականի մարտի 9-ի որոշումը՝ գյուղատնտեսության պլանավորման պրակտիկան փոփոխելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մարտի 11-ի համարում։*

*Համընդ գյուղատնտեսության շեշտակի վերելքի, «Պրավդա»-ի 1955 թվականի մարտի 11-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի մարտի 12-ի համարում։*

*Անշեղորեն կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները, «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 14-ի առաջնորդողը։*

## ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԿԱՏԱՐԵՆՔ ՀԱՑԱՀԱՏԻԿԱՑԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԳԱՐՆԱՆԱՑԻՆ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը 1955 թվականի Մայիսի մեկի առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 21-ի համարում։*

Ն. Ս. Խրուշչև.— *Ճառ ՍՍՌՄ 4-րդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայում, Հայպետհրատ, 1954։*

Ն. Ս. Խրուշչև.— *ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թվականի սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ, 1953։*

*Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին, ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955։*

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՄԻՋՈՑ Է ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔՆ ԻՋԵՑՆԵԼՈՒ ԳՈՐԾՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. Լենին.— *Մեծ նախաձեռնություն, Երկեր, հատոր 29, էջ 507—533, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. Ստալին.— *Նոր իրադրություն—տնտեսական շինարարության նոր խնդիրներ— ճառ տնտեսավարների խորհրդակցությանը, 23 հունիսի 1931 թ., Երկեր, հատոր 13, էջ 81—85, Հայպետհրատ, 1951։*



Ն. Ս. Խրուշչև.— *Շինարարության ինդուստրիալ մեթոդները լայնորեն արմատավորելու, նրա որակը բարելավելու և արժեքն իջեցնելու մասին, տպագրված է «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 28-ի և 29-ի համարներում։*

*Սիստեմատիկաբար կատարելագործել արտադրության տեխնոլոգիան— «Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի ապրիլի 3-ի համարում։*

*Հայկական ՍՍՌ 1955 թվականի Պետական բյուջեն, տպագրված է «Ագիտատորի բլոկնոտ»-ի № 8-ում։*

## ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆԸ

*(Մայիսի 9-ը)։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. Ստալին.— *Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմը, Հայպետհրատ, 1950։*

Ի. Վ. Ստալին.— *Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թվականի փետրվարի 9-ին, Հայպետհրատ, 1950։*

Ն. Ա. Բուլգանին.— *Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, Հայպետհրատ, 1955։*

Վ. Մ. Մոլոտով.— *Միջազգային դրության և ՍՍՌՄ կառավարության արտաքին քաղաքականության մասին, Հայպետհրատ, 1955։*

*Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Դեկլարացիան, տպա-*





*գրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 10-ի համարում։*

Դ. Տ. Շեպիլով.— *Լենինի գաղափարները լուսավորում են կոմունիզմի ուղին,— զեկուցում Մոսկվայում կայացած հանդիսավոր նիստում՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 85-րդ տարեդարձին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 23-ի համարում։*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԵՐԿԱՐԱՏԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Մ. Մոլոտով.— *Միջազգային դրության և ՍՍՌՄ կառավարության արտաքին քաղաքականության մասին, Հայպետհրատ, 1955։*

*Անհրաժեշտ քայլ,— «Պրավդա»-ի 1955 թվականի ապրիլի 10-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 12-ի համարում։*

*ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրության հայտարարությունը Մերձավոր ու Միջին Արևելքի անվտանգության մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 17-ի համարում։*

*Կարևոր քայլ Եվրոպայի խաղաղությունն ամրապնդելու ճանապարհին, «Պրավդա»-ի 1955 թվականի ապրիլի 16-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի ապրիլի 17-ի համարում։*

Դ. Տ. Շեպիլով.— *Լենինի գաղափարները լուսավորում են կոմունիզմի ուղին, զեկուցում Մոսկվայում կայացած հանդիսավոր նիստում՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 85-րդ տարեդարձին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 23-ի համարում։*



---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

*գրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 10-ի համարում։*

Դ. Տ. Շեպիլով.— *Լենինի գաղափարները լուսավորում են կոմունիզմի ուղին,— զեկուցում Մոսկվայում կայացած հանդիսավոր նիստում՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 85-րդ տարեդարձին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 23-ի համարում։*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԵՐԿԱՐԱՏԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Մ. Մոլոտով.— *Միջազգային դրության և ՍՍՌՄ կառավարության արտաքին քաղաքականության մասին, Հայպետհրատ, 1955։*

*Անհրաժեշտ քայլ,— «Պրավդա»-ի 1955 թվականի ապրիլի 10-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 12-ի համարում։*

*ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրության հայտարարությունը Մերձավոր ու Միջին Արևելքի անվտանգության մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 17-ի համարում։*

*Կարևոր քայլ Եվրոպայի խաղաղությունն ամրապնդելու ճանապարհին, «Պրավդա»-ի 1955 թվականի ապրիլի 16-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի ապրիլի 17-ի համարում։*

Դ. Տ. Շեպիլով.— *Լենինի գաղափարները լուսավո-*



*րում են կոմունիզմի ուղին, զեկուցում Մոսկվայում կայացած հանդիսավոր նիստում՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 85-րդ տարեդարձին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի ապրիլի 23-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԲԱՑՎԱԾ Է

## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի

1955 թվականի հունիս—դեկտեմբեր ամիսների

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ*

*6 ամիսը — 6 ռ.*

*Մեկ համարը — 50 կոպեկ*

**«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»**

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 9 1955 г.**

*ՎՖ 10520 Պատվեր 429 8200*

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.:*